ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԿԻՑ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԱՏՈՒՆ
(ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ)
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 4 1958

Լ. ԽԱՉԻԿՅԱՆ

# ԿՈՍՏԱՆԴԻՆ ԲԱՐՁՐԲԵՐԴՑՈՒ ԽՐԱՏԱԿԱՆ ԹՈՒՂԹԸ, ԱՌԱՔՎԱԾ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ. 1251 ԹՎԱԿԱՆԻՆ

*Կոստանդին կաթողիկոս Բարձրբերդցու (1221—1267) խրատական թղթի մեզ հայտնի միակ ձեռագիրը պահվում է Լենինգրադի Մ. Ե. Սալտիկով-Շչեդրինի անվան Պետ. Հանրային գրադարանի ձեռագրական բաժնի հայերեն ձեռագրերի հավաքածուի մեջ:*

*1954 թվականի նոյեմբերին, գործուղվելով Լենինգրադ, հնարավորություն ունեցանք ընդօրինակելու 90 ամբողջական ձեռագրերից բաղկացած այդ հավաքածուի ԺԵ. դարի ձեռագրերի հիշատակարանները, ինչպես նաև, թռուցիկ կերպով, ծանոթացանք ձեռագրերի բովանդակության հետ:*

*Հայերեն ձեռագրերի այս հավաքածուն բաղկացած է երկու (հին և նոր) շարքերից, ըստ որում յուրաքանչյուր շարքում* (серия) *գրանցված են 45 ձեռագրեր, 1-ից 45 ինքնուրույն համարակալությամբ:*

*Հին շարքի ձեռագրերը* (старая серия, *№№ 1—45) ստացվել են 1891 թվականին Կամենեց-Պոդոլսկից, սուրբ Նիկողայոսի անվան հայկական եկեղեցին և նրան կից արխիվը լուծարքի ենթարկելուց հետո: Հավաքածուի այս շարքի մասին համառոտ մի հաղորդում է հրատարակված գրադարանի 1891 թ. հաշվետվության մեջ (տե՛ս* Отчет императорской публичной библиотеки за 1891 год, СПб, 1894, стр. 11—16), *որտեղ թռուցիկ նկարագրված են ամենաարժեքավոր 13 ձեռագրերը, ինչպես նաև ձեռագրերի հետ մեկտեղ ստացված 54 հայերեն տպագիր գրքերը (նկարագրությունը կատարել է Ն. Մառը): Ձեռագրերի մեծագույն մասն ընդօրինակված են Ուկրաինայի և Լեհաստանի հայկական գաղթավայրերում, ուստի օգտակար նյութ կարող են մատակարարել այդ գաղթավայրերի պատմության հարցերով հետաքրքրվող մասնագետներին:*

*Ավելի մեծ արժեք են ներկայացնում Հավաքածուի նոր շարքի ձեռագրերը* (новая серия, *№№ 1—45), որոնք ձեռք են բերվել գրադարանի կողմից աստիճանաբար, գնումների և այլ ճանապարհներով, 1891 թվականից հետո ընկած ժամանակներում:*

*Այս ձեռագրերը, եթե նկատի չառնենք նրանցից մի քանիսի հիշատակարանների հրատարակությունները «ԺԵ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանները» ժողովածուի մեջ (տե՛ս էջ 651—661), մինչ այժմ անծանոթ են մնացել հայագետներին:*

*Դրանցից ուշադրության արժանի են, հատկապես, հետևյալները. ա) № 14, կրկնագիր ձեռագիր, բաղկացած 255 մագաղաթյա թերթերից, երկրորդ գիրը 1554 թվականից: Պարունակում է նաև Անանիա Շիրակացու թվաբանական աղյուսակները, բ) № 39, Մխիթար Գոշի Դատաստանագիրք Հայոց և Ասորահռոմեական դատաստանագիրք, ընդօրինակված Թովմա դպրի կողմից,*

1404 թվականին, գ) № 31, Հարցմանց գիրք Գրիգոր Տաթևացու, ընդօրինակված Հերմոնի վանքում, Գրիգոր Ախալցխացի գրչի կողմից (պատմական հարուստ բովանդակությամբ ու կենցաղագրական ուշագրավ մանրամասնություններով լի հիշատակարանով), դ) № 15, Յայսմաւուրք, ընդօրինակված Կարապետ գրչի կողմից, 1427 թվականին և, վերջապես, ե) № 37, բազմազան նյութերի ժողովածու, ընդօրինակված ԺԵ. դարում: Այս ձեռագրի 208ա—214բ էջերի վրա ընդօրինակված է Կոստանդին Բարձրբերդցու մեր ուշադրությունը գրաված «Խրատական թուղթը»[1]:

Սահմանափակ ժամանակ ունենալով մեր տրամադրության տակ, 1954 թվականին կարողացանք միայն որոշ քաղվածքներ անել խրատական այդ թղթից: Հետագայում, մեր խնդրանքով, պատմական գիտությունների թեկնածու Հռիփսիմե Ջամփոլադյանը ընդօրինակեց ձեռագրի մեզ հետաքրքրող էջերը, իսկ 1956 թվականին գրադարանի արտաքին սպասարկման բաժնից ստացանք «Խրատական թղթի» էջերի պարզ լուսանկարները, որոնք հնարավորություն են տալիս ծայրից-ծայր անսխալ վերծանել հրատարակության արժանի այդ բնագիրը:

* * *

Մեզ զբաղեցնող թուղթն սկսում է այսպես. «Խրատական թուղթ ի ձեռն մեր վարդապետին Վարդանայ»:

Այս առաջին դեպքը չէր, երբ Կոստանդին կաթողիկոսը դիմում էր Արևելյան Հայաստանի հայերին «ի ձեռն» (նշանակում է՝ միջնորդությամբ, գործակցությամբ) Վարդան Արևելցու:

Հայտնի է, որ դեռևս 1246 թվականին, կաթողիկոսը «իբրև ետես զաւեր աշխարհիս Հայոց և զտառապանսն, զոր կրէին ի հարկահանացն և ի զօրաց թաթարին, և մանաւանդ եղեալ իմացաւ՝ եթէ մեղք են այսմ ամենայնի պատճառ… փութացաւ գրել թուղթս շրջաբերականս և կանոնս համաշխարհականս» (Կիրակոս Գանձակեցի «Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1909, էջ 278—279):

Կիրակոս Գանձակեցին իր «Պատմության» մեջ ամբողջությամբ մեջ է բերում այդ շրջաբերական թուղթն ու «Սահմանք կանոնականք» հայտնելով, որ դրանք Կիլիկիայից Արևելք է բերել նույն Վարդան Արևելցին, որը Երուսաղեմից հայրենիք վերադառնալու ճանապարհին, հինգ տարի մնալով Կիլիկիայում, սերտ կապեր էր հաստատել Հեթում թագավորի և Կոստանդին կաթողիկոսի հետ (Նույն տեղում, էջ 279):

Այդ մասին շրջաբերական իր թղթի նախաբանում խոսում է նաև կաթողիկոսը: «Առաքեցի զարդիւնական վարդապետդ զՎարդան,— գրում է նա,— փոխանակ անձին իմոյ, զոր եւ ինձ նախախնամութիւնն աստուծոյ, ձգելով առ իս ի կողմանց ձերոց ի հինգ ամաց հետէ, զոր իբրև տեսի և ճանաչեցի ըստ կարի, կապեցի զդա միջնորդութեամբն աստուծոյ ընդ անձին իմոյ կենօք և մահու, մեծաւ հարկիւ և սիրով բռնեալ ընդ իս յաւիտեան» (Նույն տեղում, էջ 282—283):

Գալով հայրենիք Վարդանը շրջում է «ընդ գաւառս Հայոց», ծանոթացնում եպիսկոպոսներին, վանականներին ու իշխաններին կաթողիկոսի կանոնական սահմանների հետ և վերցնում նրանցից «ձեռագիր հաւանութեան», այսինքն՝

[1] Ձեռագիրը մուտք է գործել Սալտիկով-Շչեդրինի անվան գրադարանի ձեռագրական բաժին 1930 թվականի նոյեմբերի 30-ին:

կանոնական սահմանները կատարելու պարտավորություն։ Հայտնի է նաև, որ հետագայում նա, Հաղբատում և Ջագավանքում, գումարում է եկեղեցական ժողովներ ու մշակում կանոններ, որոնք շատ կետերով նմանվում են Կոստանդին կաթողիկոսի «Սահմանքի» կանոններին (տե՛ս Գարեգին վարդապետ, Ջագավանից ժողովը, «Շողակաթ», էջ 22—46)։

Վարդանի և Կոստանդին կաթողիկոսի միջև սերտ կապերի գոյության մասին փաստերը չեն սահմանափակվում սրանցով։ Գիտենք, որ դեռևս Կիլիկիայում գտնված ժամանակ (1246 թ.) Վարդանը գործակցել է կաթողիկոսին, պատշաճ պատասխան գրելու համար Հռոմի պապի կողմից Հեթում թագավորին ուղղված դավանաբանական գրությանը։

Պատասխան այդ թուղթը հայ դավանաբանական գրականության գլուխ գործոցը կարելի է համարել։ Կաթողիկոսը, դարձյալ «ի ձեռն արգիւնական վարդապետին Վարդանայ», ոչ միայն վճռականորեն մերժում է կաթոլիկ եկեղեցու տեսակետն այն մասին, թե «Հռոմայ աթոռն միայն ունի իշխանութիւն ի վերայ երկրի կապելոյ և արձակելոյ և ծառայութիւն պարտին նմա ամենայն եկեղեցիք», այլ և պապի գրության մեջ գտնում է «հնգետասան սխալ և անընդունակ բան» և հայտարարում, որ «զփրեանց (կաթոլիկների) արուեստակեալ առասպելսն իսկի չընդունիմք, այլ և արհամարհեմք» և այլն[1]։

Կոստանդին կաթողիկոսի պատվերով Վարդանը գրել է նաև «Դաւանութիւն հաւատոյ» խորագրով մի գրություն[2]։

Ուշագրավ է, որ Կոստանդին Բարձրբերդցու նորահայտ խրատական թուղթը ևս, ինչպես տեսանք, գրված է «ի ձեռն մեր վարդապետին Վարդանայ»։

Արդ, ի՞նչ է նշանակում հաճախ կրկնվող այս «ի ձեռն» արտահայտությունը։ Եվ Վարդան վարդապետը կաթողիկոսի կամքի ու մտքի լոկ թարգմա՞նն է հանդես գալիս այս ու վերոհիշյալ դեպքերում, թե ինքը գործոն մասնակցություն ունի կաթողիկոսի ստորագրությամբ հրապարակված պաշտոնական այդ գրությունների շարադրմանը. այս մի հարց է, որի պատասխանը պետք է զբաղեցնի հայ բանասիրությանը։

Ինչ և է. «Սահմանք կանոնականքից» ընդամենը 5 տարի հետո՝ «յեւթնհարիւր թուիս մերոյ տոմարիս և Լ. (30) հայրապետութեանս մերոյ», այսինքն 1251 թվականին, Կոստանդին կաթողիկոսը կրկին պահանջ է զգում շրջաբերական թղթով դիմելու Արևելյան Հայաստանի հայերին։

Խրատական այդ թուղթը բաղկացած է երկու բաժիններից. ա) Նախաբան և բ) 18 կանոններ, ըստ որում 3-րդ կանոնը չի ընդօրինակված բնավ, իսկ 18-րդ կանոնը թերի է ընդօրինակված, ուստի դժվար է որոշել, որ հենց այդ կանոնով էլ ավարտվելիս է եղել բնագիրը։

Ձեռագրի գրիչը, ընդօրինակելով 18-րդ կանոնի առաջին բառերը (2,5 տող), անգրել է թողել շուրջ 7 տողի չափ տարածություն։ Կարելի՞ է արդյոք այս փաստից եզրակացնել, որ բնագրի մեզ հասած միակ օրինակը թերի է ընդա-

---

[1] Տե՛ս «Գիրք Թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 503—509։

«Թուղթ Կոստանդեայ կաթողիկոսի Հայոց, զոր գրեաց առ Հեթում թագաւորն ի յաստուածապահ դղեկէս, ի հայրապետական աթոռոյս Հռոմկլայէս, ի մայրաքաղաքն Սիս պատասխանի թղթին, որ ի պապէն Հռոմայ բերաւ առ թագաւորն Հայոց Հեթում, ի ձեռն Լեկաթին որ կոչէր Տիմանչ, ի թուիս Հայոց ի ՈՂԵ. (1246), ի ձեռն արգիւնական վարդապետին Վարդանայ, յարմար իրիս»։

[2] Գ. Սրվանձտյան, Թորոս աղբար, Բ. 395։

մենը 7 տողով, չգիտենք։ Այնուամենայնիվ, ելնելով այն փաստից, որ Կոստանդինի «Սահմանք կանոնականքը» պարունակել է ընդամենը ԻԲ. (22) կանոն[1], կարելի է ենթադրել, որ մեր միակ բնագրի թերությունը մեծ չէ, և, թերևս, ձեռագրում ինչ-ինչ պատճառներով, չի ընդօրինակվել վերջից ընդամենը միերկու կանոն։

Նախարարանում, կաթողիկոսը մի քանի անգամ, նկատի ունենալով անշուշտ 1246 թվականին տարած «Սահմանք կանոնականքը», ակնարկում է, որ ինքը նման թղթով դիմել է Արևելյան Հայաստանի բնակչությանը նաև տարիներ առաջ։ Նա գրում է. «Եւ յառաջ զոր յղարկեցի առ ձեզ կարճ բանիւ զմեր սուրբ հարցն գիրսն և զուսումն, թէ որպէս պարտ է լինել քրիստոնէին» (ձեռ. էջ 211ա), կամ «Մեք զհակառակն հասկացաք, թէ բնաւ չէք լսել աղաչանացս մեր, և չէք արարեալ. և բազմապատկեալ են և շատացեալ ամենայն չարիք և մեղաց տեսակք, զոր յառաջ սակաւ ունէիք» (էջ 208ա)։

Այդ «մեղաց տեսակները» թվարկված են նախարարանի տարբեր էջերում, այսպես. «ծուլացեալ էք ի յուսմանէ և յաղօթից և ի ժամատեղաց, և էք իբրև զանբան անասունք՝ չգիտելով զաւրէնս քրիստոնէից» (էջ 208ա), չունեք «սահման խոստովանութեան և հաղորդութեան, և եկեղեցազարդութեան և քահանայասիրութեան և աստուծոյ պտղաբերութիւն» (էջ 208բ)։

Եվ ահա, հայերի գործած այս «ծանր մեղքերով» է բացատրում կաթողիկոսը մոնղոլական հրոսակների Հայաստանում գործած անլուր խժդժությունները՝ գերություն, սպանություն, հարկային տաժանակիր լուծ և այլն։

Նախարարանի պատմական տեսակետից ամենաուշագրավ տողերը հենց նվիրված են մոնղոլական արշավանքներին հաջորդող տարիների քաղաքական աղետավոր անցուդարձերին։ Այս առումով «Խրատական թուղթը» լրացնում է հայ պատմագիրներին և իր ուրույն տեղը գրավում մոնղոլական արշավանքների ու տիրապետության առաջին տասնամյակների աղբյուրների շարքում։

Կրկին դիմելով Արևելյան Հայաստանի հայերին Կոստանդին Բարձրբերդցին, իր զարմանքն է հայտնում այն բանի կապակցությամբ, որ նրանք, չնայած ճաշակած են եղել արդեն աստծո ցասման գավազանի դեր ստանձնած մոնղոլների հարվածների սաստկությունը, սակայն ճիշտ ճանապարհի չեն եկել և շարունակում են մեղանչել իրենց Տիրոջը։

Արժե ծանոթանալ նախարարանի այդ հատվածին։ «Եւ այդ ևս առաւել հիացումն և մեծ զարմանք,— գրում է կաթողիկոսը,— որ այդպէս մոռացայք զպատուհասն զոր կրեցիք՝ հարուածեալք և գանեալք զաւազանաւ ցասմանն աստուծոյ, և տեսանէք աչաւք ձերովք զերկիրս և զդաշտս ձեր, որ սակաւ մի յառաջ լի էին դիակաւք ոսկերաւք սպանելոցն, և զայրս և զխորաձորս, որ լցեալ էին փախստականաւք, և ուտէք և ըմպէք զհաց և զգինի ի գետնոյդ զոր տեսէք թաղեալ արեամբ սիրելեաց ձերոց, դուք որ ծածկեցուցէք զաշխարհդ ձեր մեղաւք և տեսէք զնա լցեալ արեամբ և արտասուաւք։ Եւ զի լոյս պատուիրանին տեառն և աւրէնք եկեղեցւոյ ոչ ծագէին ի սիրտս ձեր՝ վասն այնորիկ տեսէք զխարումն եկեղեցւոյ և զկոխումն և կողոպուտ սպասուց և պաշտելի և ահաւոր

[1] Նկատի ունենք Կ. Գանձակեցու «Պատմություն» Ոսկան Երևանցու 1858 թ. Մոսկվայի հրատարակության բնագիրը։ Վ. Պալեյանի հրատարակության մեջ (տե՛ս Պատմ. կաթողիկէ վարդապետութեան ի հայս և միութեան նորա ընդ հռոմէական եկեղեցւոյ ի Փլորենտեան Սիւնհոդոսի, Վիեննա 1878, Հավելված Ի, էջ 267—272) «Սահմանք»-ը բաժանված է ԻԴ (24) կանոնների։

նշանից և աստուածային գրոց։ Եւ ոչ սնուցանէիք զտղայս ձեր աստուածապաշտութեամբ և ուսմամբ տեառն՝ առին զնոսա ի տանց և ի գրկաց ձերոց, այլ և ի ծոցոյ սուրբ եկեղեցւոյ՝ զգնեալս արեամբ Քրիստոսի զգառինսն, և տարեալ վաճառեցին յազգս և յաշխարհս հեռաւորս, իբրև զանբան անասուն» (էջ 209ա—209բ)։

Շարունակության մեջ Բարձրբերդցին արձանագրում է, որ ողորմածն աստված «էարկ ի բարի կամս մեծազօր ղանին և իւր խաղաղասէր զաւրագըլխացն և զաւրացն, և արարին խաղաղութիւն մնացորդացդ ի ձեռն քրիստոսէր և աղքատասէր պարոնին Աւագին» (էջ 209բ)։ Այս հատվածից պարզ է դառնում, որ մեջ բերված նկարագրությունը վերաբերում է 1236 թվականի դեպքերին, որովհետև, ինչպես հայտնի է, Ավագն այդ թվին անձնատուր եղավ Չարմաղանին (Ջուրմաղուն) և կրկին վերահաստատվեց իր կալվածքներում, հարկատու դառնալով մոնղոլներին և պարտավորվելով մասնակցել նրանց հետագա արշավանքներին։ Հաջորդ տարին Ավագը մեկնեց մեծ ղանի արքունիքը և սիրով ընդունվելով՝ հետ ուղարկվեց Հայաստան։ Չարմաղան զորավարը հրաման ստացավ երկրի իշխանությունը հանձնել Ավագին և նրա աջակցությամբ հնազանդեցնել մյուս իշխաններին (տե՛ս Մանանդյան Հ., Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր Գ, Երևան, 1952, էջ 203—206)։

Հայ ժողովուրդը, այսպիսով, ընկավ կուլտուրական ցածր աստիճանի վրա կանգնած քոչվոր մոնղոլների ծանր ու զարհուրելի տիրապետության տակ։ Հայ ֆեոդալները ընդունելով մոնղոլների գերիշխանությունը սկսեցին գործակցել նրանց «ի նեղելոյն և ի պահանջելն վասն իւրեանց շահելոյ» (Կ. Գանձ., էջ 349) և առաջվա նման «զրկէին և կողոպտէին զաղքատս, և ի զրկանաց անտի գնէին հանդերձս մեծագինս և ագանէին, ուտէին և ըմպէին և մեծամեծս փքանային» (Նույն տեղում, էջ 303)։

Այն բանից հետո, երբ մոնղոլները իրենց սուրը պատյանի մեջ դրին, Բարձրբերդցու կարծիքով Արևելյան Հայաստանի բնակչության համար ստեղծվեցին կյանքի մխիթարական պայմաններ. «Եւ դարձեալ կարկատեցայք և արմատ արձակեցիք և շինեցայք։ Եւ մեք լսեցաք և մխիթարեցաք և ուրհնեցաք զաստուած և զղանին և զիւր հեծելին բարեմտութիւնն որ առ մեզ» (էջ 209բ—210ա)։ Պետք է կարծել, որ նա իր տեղեկությունները քաղում էր այնպիսի ինֆորմատորներից, որոնք հայ ֆեոդալների բարօրությունը նույնացնում էին ժողովրդի բարօրության հետ։

Կաթողիկոսը, անշուշտ, գիտեր, որ մոնղոլները անասելի ծանր հարկեր էին բարդել ժողովրդի վրա՝ «հարկդ ծանր է և խիստ» գրում էր նա։ Սակայն այդ ևս բացատրում էր ժողովրդի մեղքերի բազմությամբ. «և այլ վասն մեղաց է, զի կարկտիւ և երաշտով և խորշակով և մարախով պակասութիւն է ի լինել երկրիդ պտղաբերացդ, ուստի զհարկն ձեր վճարէք», ասում էր նա խրատական իր թղթում, հավատացնելով, որ ժողովրդի վիճակը կբարվոքվի ոչ թե մոնղոլների դեմ զենք վերցնելով, այլ պարկեշտ վարքով աստծու պատվիրաններին հետևելով և մոնղոլական ղանի ու իր զորքերի կենդանության ու հաջողության համար աղոթելով։

Ժողովուրդը, սակայն, կաթողիկոսի նման չէր մտածում։ Եվ 1249 թվականին Հյուսիսային Հայաստանի շրջաններում ու Վրաստանում մոնղոլական տիրապետության դեմ բռնկվում է ապստամբություն։

Ժամանակակից հայ և վրաց աղբյուրները ամեն կերպ աշխատում են

սքողել այդ ապստամբությունը ժողովրդական խավերի մասնակցության փաստը: Գրիգոր Ակներցին նույնիսկ դեպքը պատմում է այնպես, որ իբր ապստամբություն չի էլ եղել, այլ Դավիթ Թագավորի արքունիքում հավաքված իշխանները, կեր ու խումի ժամանակ, երբ բավականին գինովցած էին, մտածել են միայն այն մասին, որ միասնական ուժերով մոնղոլների դեմ դուրս գալու դեպքում իրենք կարող են հաղթանակող լինել. («յորժամ հաշուեցան և համար արարին զօրացն հայոց և վրաց ասացին զիւրեանցն յաղթող լինել ի վերայ զօրաց տաթարին»): Սակայն պատմիչի հավաստիացումներով այդ «ոչ թէ ուղորդ խորհեցան կամ խօսեցան, այլ առ կատականս» կամ «ոչ ուղորդ, այլ ընդ խաղս և ընդ կատակս»[1]:

Վրաց և հայ իշխանները բանտարկվում և հազիվ ազատվում են մահվանից՝ մեծ փրկանք վճարելով. իսկ Հյուսիսային Հայաստանի և Վրաստանի շրջանները կրկին անգամ ասպարեզ են դառնում մոնղոլական զորքերի խժդժությունների:

«Եւ ինքեանք (մոնղոլները) յարձակեցան ի կողմանս Վրաց, ի վերայ բազում գաւառաց, որք ապստամբ, և որք ոչ, և զբազումս կոտորեցին, և զևս բազմագոյնս գերի վարեցին, զարս և զկանայս և զմանկունս զետամոյն առնէին անթիւ ի բազմութենէ. և այս գործեցաւ ի ՈՂԸ. (1249) թուականին Հայոց»,— գրում է Կիրակոս Գանձակեցին (էջ 305):

«Անթիւ կոտորեցին և գերեցին զեօղս և ագարակս և գործեցին խայտառականս ի կանայս ի Հայս և ուելի յաշխարհն Վրաց»—լրացնում է նրան Վարդան Արևելցին (էջ 148):

«...Ի գերելոյ և յաւարելոյ զաշխարհն ոչ դադարէին»— ասում է Գրիգոր Ակներցին (էջ 21) և այլն:

Շատ արժեքավոր է նաև Կոստանդին կաթողիկոսի «Խրատական թղթի» տվյալը այս ապստամբության առնչությամբ մոնղոլների գործած վայրագությունների մասին: Նա գրում է. «Դարձեալ զայրացոյց սատուած զբարս զաւրացդ որ առ ձեզ, և հանին զուսերս ի պատենից և լարեցին զաղեղունս իւրեանց, և ծայրաքաղ արարին ի բազում տեղիս՝ զմարդ և զանասուն և զստացուածս, որպէս առ մեզ էհաս համբաւն» (էջ 210ա):

Բայց իր հոգևոր հոտի գործած մեղքերը կաթողիկոսի աչքին այնքան խոշոր են երևում, որ նրան թվում է թե «դեռ ոչ արար ողորմածն սատուած ըստ մեղաց մերոց, և ոչ հատոյց զամենայն չարիսն մեր, և հաշտեցան ընդ մեզ դարձեալ ի տեառնէ յաջողեալ զաւրքն զանին, և կայք ի տունս և ի վանորայս և ի հայրենիս ձեր» (էջ 210ա):

Բավարարվեք ձեր ունեցածով, աղերսում է Բարձրբերդցին, «մի առնէք զմեզ ամաւթով... և մի մատնէք զանձինս ձեր սատէն կենաւք ի մեծամեծ փորձութիւն, և յետ սատի կենացս անշիջանելի գեհենին և աններելի տանջանացն, այլ զգաստացարուք և ի յուշ և ի խելս եկէք...» (էջ 211ա):

[1] Մաղաքիայի աբեղայի (Գրիգոր Ակներցի), Պատմութիւն ազգին նետողաց, Ս. Պետերբուրգ, 1870, էջ 20—21: Այդ ապստամբության մասին տե՛ս նաև «Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի», Վենետիկ, 1862, էջ 148, Կիրակոս Գանձակեցի, էջ 303—305, Մխիթար Այրիվանեցի, էջ 67, «Մանր ժամանակագրություններ», I, էջ 42 (Սմբատա եպիսկոպոսի Տարեգրությունը), «Մանր ժամանակագրություններ, II, էջ 140 (Անանիա Սեբաստացու ժամանակագրությունը), Մելիքսեթ-բեկ, Վրաց աղբյուրներ, էջ 57 ևն:

Այդ ճանապարհով միայն, և ոչ անհնազանդությամբ ու ապստամբությամբ, կարծում է Բարձրբերդցին, ժողովուրդը, մոնղոլ տիրապետողների բարյացակամությամբ, կարող է նաև թեթևացնել տնտեսական իր ծանր վիճակը։

«Արդ դուք մեզ լսեցէք,— գրում է նա,— և ի բարին դարձիք, և ի ձեր պարկեշտ վարքն ըստ պատուիրանին աստուծոյ, և մեք երաշխաւոր եմք, որ ամենայն ճշմարտութեամբ աստուած առ ձեզ դառնայ՝ գթութեամբ և ողորմութեամբ յաւդոց և յեղանակաց տարւոյ... և երկիր առատութեամբ տացէ ձեզ զպտուղ իւր, և ղանին կամքն արձականայ և թեթևացուցանէ զմալն, զի սիրտ թագաւորաց ի ձեռին աստուծոյ են, և նա է տուեալ զամենայն աշխարհս ղանին և այլ է տալոց նմա, չպակասէ ոչինչ զձեր մալն թեթևացնելով։ Ապա դուք զառաջի աղաւթք նմա և իւր զաւրացն արարէք, զի այն է մեր աւրէնքն, որ զոր աստուած մեզ տէր և թագաւոր տացէ՝ յառաջին աղաւթքն մեր զնմա կենդանութիւնն և զաջողումն խնդրեմք, և այսպէս զնա է տուեալ և թող հանապազ զնա տա» (էջ 210բ)։

Կոստանդին Բարձրբերդցու այս խրատները թելադրված չէին միայն քրիստոնեական բարեպաշտության ու աստծո կողմից տրված տերերին հնազանդորեն ծառայելու սկզբունքով։ Չպետք է մոռանալ, որ ապստամբությունը բռնկվելուց մի տարի առաջ, 1248 թվականին, Հեթում թագավորը իր եղբայր Սմբատ Սպարապետին ուղարկել էր մոնղոլական մեծ ղանի՝ Գույուկի մոտ, հայտնելու համար իր հպատակությունը, հույս ունենալով, որ մոնղոլների օգնությամբ Կիլիկիան կկարողանա հաջողությամբ դիմագրել եգիպտական սուլթանությանը։ Եվ բնականաբար, Կիլիկյան արքունիքը և նրա քաղաքական շահերի ջատագով հայ կաթողիկոսությունը մոնղոլների հետ շահավետ դաշինք կնքելու մտադրությամբ, ամեն կերպ պետք է ձգտեին շահել նրանց սիրտը հայերի նկատմամբ, ցույց տալ, որ հայ ժողովուրդը ամենուրեք՝ և՛ բուն երկրում, և՛ Կիլիկիայում, մոնղոլների հնազանդ հպատակներն են ու նրանց տիրակալության ջերմ կողմնակիցները։

Հայտնի է միաժամանակ, որ սկսած 1245 թվականից եվրոպական մի շարք թագավորներ, Հռոմի պապի գլխավորությամբ, առաքելություններ էին հղում մոնղոլական ղաների մոտ, փայփայելով նրանց քրիստոնյա դարձնելու և նրանց զինական անպարտելի ուժը Եգիպտոսի, Պաղեստինի ու Սիրիայի դեմ ծրագրվող խաչակրաց արշավանքին ի նպաստ օգտագործելու անիրականանալի հույսեր[1]։ Կիլիկյան հայկական թագավորությունը, իր սեփական քաղաքական ու տնտեսական շահերն ունենալով, շահագրգռված էր այդ ծրագրերի իրականացմամբ և, իր հերթին, ջանքեր էր գործադրում այդ ուղղությամբ։ Արևելյան Հայաստանի բնակչության անհնազանդությունը մոնղոլներին, հասկանալի պատճառներով, կարող էր վնաս բերել Կիլիկիայի և նրա եվրոպական դաշնակիցների քաղաքական ու տնտեսական շահերին։

Այս պատմական հանգամանքներն ի նկատի ունենալով միայն հնարավոր է լինում բացահայտել Կոստանդին կաթողիկոսի խրատների քաղաքական դրդապատճառները։

Բայց հայոց կաթողիկոսը, որպես եկեղեցու գլուխ, ուներ նաև իր հաշիվները։

1 Տե՛ս Հակ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատոր Ա, Երևան, 1932, էջ 1—3։

Հայ ժողովրդի կրած բոլոր տառապանքները բացատրելով ժողովրդի իսկ «գործած» անօրենների հանցանքներով՝ քրիստոնեական պատվիրանների խախտումով, կաթողիկոսը ձգտում էր ամրապնդել ժողովրդի հավատը, բարձրացնել եկեղեցու հեղինակությունը, վերականգնել քրիստոնեական բարոյականության ու աստվածավախության խախտված սկզբունքները, մի խոսքով «դարձի բերել» աստծու ճանապարհից շեղված իր հոգևոր հոտին։

Հենց այս նպատակին են ուղղված «Խրատական թղթի» կանոնները, որոնք պատմական, ազգագրական ու կենցաղագրական զգալի հետաքրքրություն են ներկայացնում։

Կանոններից մի քանիսը 1246 թվականին Հայաստան առաքված «Սահմանք կանոնականք»-ից են քաղված ու վերաշարադրված փոքր ինչ համառոտվելով։ Դրանք են Ա, Է, ԺԱ, ԺԴ, ԺԷ կանոնները, որոնք նույն հերթականությամբ համապատասխանում են «Սահմանք կանոնականք»-ի Է, ԺԶ, ԺԹ, ԺԴ, ԺԸ կանոններին։

Այդ կանոնների նմանություններն ու տարբերությունները պարզ ցույց տալու մտադրությամբ՝ ստորև զուգահեռաբար մեջ ենք բերում դրանք ամբողջությամբ կամ հատվածաբար։

| «Խրատական թուղթ» | «Սահմանք կանոնականք» |
|---|---|
| *(Լենինգրադի Համր. գրադարան, ձեռագր. բաժին, հայերեն ձեռ. ֆոնդ, Նոր շարք, № 37, էջ 211բ—214բ)։* | *(Կ. Գանձակեցի, Պատմություն, էջ 288—294* |
| *1) Եւ առաջին այս եղիցի ուսումն որ ամուսնաւորքն հինգ ազգաւք հեռի լինին յարեան ազգակցութենէ, և ի վեցերորդին պսակին, քան զԺԴ. տարին պակաս չլինի հարսն և փեսայն՝ քան զԺԴ... (էջ 211բ)։* | *Է. Զպսակն ընտրութեամբ արասցեն՝ վեց ծննդովք հեռացեալ յազգակցութենէ արեան. փեսայն մի պակաս քան զչորեքտասան ամն և հարսն քան զերկոտասան (էջ 289—290)։* |
| *2) Է. Յիշոցաւոր գնել յամենայն տեղիս ի մեծ և ի փոքր՝ անողորմ տուգանով և խրատով, և առաւել որ հաւատ կամ բերան կամ երես անարգէ, կամ քահանայ, կամ գերեզման՝ զլեզուն ծակեն և լար անցուցանեն և ի շուրջ ածեն ծեծելով և* տուգանք առնուն և ընդ աղքատացն ի մայն տան *(էջ 213ա)։* | *ԺԶ. ...և յամենայն տեղիս՝ ի մեծ և ի փոքր յիշոց ասող գնեն՝ ի դարպաս, ի քաղաք, ի գիւղս և յագարակս, և զանօրէն յիշոցասացսն, զբարկութիւնն աստուծոյ շարժողսն և զանձնեբելի անօրէնս, որ անարգեն զհաւատոյն, զստեղծող, զկնունք, զհրեշտակս, զքահանայ, զբերան, զերես, զգերեզման և զայլ այսպիսիս զնոր բռնեալ չարիսդ՝ զայնպիսեացն զլեզուսն հատցեն և կամ ծակեսցեն և լար ի ներս ածեսցեն, և նախատանօք ի շուրջ ածեսցեն օր մի, և ըստ գոյին* տուգանս առցեն և յաղքատս տայցեն *(էջ 292)։* |
| *3) ԺԱ. ...Պսակին և թաղմանն և մատաղին զինչ արէնքն է տացեն ժողովրդքն երիցուն, և խաչահամբոյր և յամենայն արդեանց պտուղ՝ բաժին սա-* | *ԺԹ. Ժողովրդականքն յօժարութեամբ և աղաչանօք տացեն զհասս քահանայից յամենայն արմտոց պտուղս և զկարգեալ բաժին մատա-* |

*տուծոյ, որ այլ ամենայն ստացուածքն արհնութեամբ լցցին... (էջ 213բ):*

*գին, և պսակին ընծայիւք, և թաղմանն հանդերձ, և ժամու դրամ՝ ոչ գին պատարագին, այլ երիցուն հանդերձի և կերակուրի, որ աղօթից և պատարագի պարապի յեկեղեցին (էջ 292—293):*

*4) ԺԴ. Կախարդ և գող և պոռնիկ և բոզ և յիշոցատաց կամ դառնան ի չարէն, կամ հալածին անօրէն, զի մի յանմեղաց վերայ ածցեն զբարկութիւն աստուծոյ (էջ 214ա):*

*ԺԴ. Առաւել ջան տարցեն եպիսկոպոսք և քորեպիսկոպոսք զպոռնիկսն և զշնացողսն, զհմայս և զամենայն յանցաւորսն գեհեննին երկիւղիւ ի դարձ ածել: Իսկ զանդարձն մարմնաւոր պատուհասիւ և հոգևորաւ խրատել և տուգանել... (էջ 291):*

*5) ԺԵ. Գ. անգամ ժողովէ ի տարին երէցն յեկեղեցին որիշ որիշ զարս և զկանայս և զկուսան աղջկունս և զկուսան կտրճերն, և համմար հասակացն և վարուցն խրատ տացէ, զի ամէն հասակի և վարուց և բարուց խրատ որիշ է (էջ 214ա):*

*ԺԸ. Քահանայն ի տարւոջն յեկեղեցին ժողովեսցէ զարսն առանձինն, և զկանայսն առանձինն, և որիշ զկուսան աղջկունսն, և որիշ զաղայսն զմանրէրսն, և ըստ իւրաքանչիւր պատշաճի խրատեսցէ աղաչանօք և սաստիւ, և իմասցի իւրաքանչիւրացն զվարքն, և գիտասցէ հանապազ. և թէ ինքն չէ բաւական՝ ի ձեռն այլ կատարելոյ արասցէ, որպէս ասէ սուրբն Աթանաս յիւր կանոնքն (էջ 292):*

Նման կանոնների այս համադրությունը ցույց է տալիս, որ «Խրատական Թուղթը» գրված է ավելի դյուրըմբռնելի, ժողովրդական-խոսակցական լեզվով և, բացի այդ, կանոններն այստեղ փոքր ինչ համառոտված են և դարձված ավելի պարզ ու նպատակային:

Իմաստի տեսակետից էական տարբերություններ «Սահմանք կանոնականքի» և «Խրատական Թղթի» համադրված կանոնների միջև չկան, ի բաց առյալ 2-րդ օրինակի վերջավորության: Ինչպես տեսանք «Սահմանքի» 15-րդ կանոնով առաջարկվում է հիշոցնատուներին տուգանել և ստացված դրամը բաժանել աղքատներին («և ըստ գոյին տուգանս տացեն և յաղքատս տայցեն»), իսկ «Խրատական Թղթի» համապատասխան 7-րդ կանոնով սահմանված է՝ գանձվող տուգանքը տալ մոնղոլներին, ի դիմաց աղքատների եկամտահարկի—մալի («և տուգանք առնուն և ընդ աղքատացն ի մալն տան»): Ուշադրավ այս տարբերությունը, ինքնին վկայում է մոնղոլների կողմից գանձվող հիմնական հարկի ծանրության մասին: 1251 թվականին մալը գանձվում էր այնպիսի բարձր չափերով ու վճարել անկարող չքավորները ենթարկվում էին այնպիսի պատիժների, որ նրանց փոխարեն մալը վճարելն ու նրանց մոնղոլական հարկահանների ձեռքից ազատելն ինքնին համարվում էր բարեգործություն, ճիշտ այնպես, ինչպես մի քանի տարի առաջ ողորմություն բաշխելը:

«Խրատական Թղթի» մյուս 13 կանոնները (Բ, Դ, Ե, Զ, Թ, Ժ, ԺԲ, ԺԴ, ԺԶ, ԺԷ, ԺԸ) նվիրված են այնպիսի հարցերի, որոնք «Սահմանք կանոնականք»-ում

կամ բնավ չեն շոշափվել, կամ հատուկ կանոնի նյութ չեն դարձել։ Դրանք են. խրատ՝ նորածին մանկանց սնուցանելու և աստիճանաբար, քրիստոնեական հավատքի սկզբունքներն ու աղոթքները նրանց ուսուցանելու մասին (Բ), կնունքի (Դ), խոստովանության (Ե), հաղորդության (Զ) և պահքի մասին (Ը), դյութության, երազահանության ու գուշակությունների, նրանցից հեռու կենալու անհրաժեշտության մասին, «զի այսպիսիքս օտար են ի կրաւնից քրիստոնէից» (Ժ, ԺԱ)։ Մեռածների թաղման ժամանակ մազ կտրելու, երես ու ձեռք կեղեքելու, լալական վարձելու և նման սովորությունները, որպես «հեթանոսաց և ոչ քրիստոնէից» սովորություններ՝ մերժելու մասին (ԺԲ)։ Շաբաթ և կիրակի օրերը եկեղեցի գնալու անհրաժեշտության, և այնտեղ «լռութեամբ և երկիւղիւ» աղոթելու (ԺԴ) և այն մասին, որ կարողներն և ունեորները՝ աղքատներին չպետք է բանադատեն, «զի մի տրտմեցուսցեն զարարիչն նոցա» և այլն, (ԺԶ). միմյանց զրկելուց, խաբելուց և նման ախտերից զերծ մնալու անհրաժեշտության (ԺԷ), և, վերջապես, քահանաների ընտրության մասին (ԺԸ, Թերի)։

Թվարկված կանոններից պատմական ու ազգագրական առումով հատուկ հետաքրքրություն են ներկայացնում՝ Թ, Ժ, ԺԲ և ԺԷ կանոնները, որոնք արժանի են ավելի մանրամասն ծանոթացման։

Թ. և Ժ. կանոնները հնարավորություն են տալիս ծանոթանալու հայ ժողովրդական հավատալիքների և սնահավատությունների մի բնագավառի հետ, որը բավարար չափով չի լուսաբանվում միջնադարյան հայտնի սկզբնաղբյուրների միջոցով։ Ստորև մեջ ենք բերում այդ կանոնների բնագրերը.

«Թ. Գարի և ալիւր և աւաղ և ոլոռն և ջուր մի դիւթեսցեն, և խտրութիւն հաւատոց (ուզելի է՝ հաւուց) թռչման և կռչման, և մարմնոյ խաղալոյ, և երազոյ և ձայնի կրակոյ և դրան, և սողնոյ ինչ երևելոյ ի տանն, զի այսպիսիքս օտար են ի կրաւնից քրիստոնէից, և մի որ իշխեսցէ առնել, զի մեծ մեղք են» (էջ 213բ)։

Այսպիսով, պարզվում է, որ հայ ժողովրդի մեջ տարածված են եղել գուշակման ու երազների մեկնության զանազան եղանակներ։ Գուշակություններ են արել գարու, ալյուրի, ավազի հատիկների, ինչպես նաև ոլոռների միջոցով, ցրելով դրանք և իմաստավորելով հատիկների պատահական դասավորությունը։ Հմայություններ են արել նաև թռչունների թռիչքի ու ձայների միջոցով, մարմնախաղությամբ, կրակի և դրան արձակած ձայներից, որևէ սողունի երևալուց և այլն։

Ժ. Կանոնում ասված է. «Ի քաջախաւս և յերազահան մի որ երթիցէ և յեկրատի մատն (իմա՝ մաւտն, մօտն) ադի մի իշխեսցեն ածել և մի ի բանից նոցա խաբեսցին և մի հաւատասցին բնաւ» (էջ 213բ)։

ՆՀԲ-ի հեղինակներին, հայտնի են «քաջախօս» բառի հետևյալ իմաստները. «քաջաբան, քաջալեզու, համարձակախօս, քաղցրախօս». դրանցից և ոչ մեկը, սակայն, չի հարմարվում կանոնի բովանդակությանը։ Ուստի, պետք է ենթադրել, որ «քաջախօս» բառը հնում ունեցել է նաև «ոգիների, քաջքերի կամ դևերի հետ խոսող, կախարդ, պատգամախօս» նշանակությունը, ելնելով այն բանից, որ քաջ կամ քաջք բառն իրոք ունի «դևք, ցնորք, ոգի, այս, դև» նշանակությունները (հմմ. նաև «երազախօս» և այլն)։

«Լեկրատ» բառը ցարդ հայտնի էր միայն Կիրակոս Գանձակեցու «Պատմությունից»։ «Վասն Դաւթի մոլորեցուցչի» գլխում նա պատմում է, որ «Եւ լեկրատք (Մոսկվայի և Թիֆլիսի հրատարակության մեջ սխալմամբ՝ լեկրարդք), որ

երթային առ նա, ասէր թէ խաղացէք առաջի իմ և պարեցէք, և նոքա առնէին այս յօժարութեամբ, քանզի այս ազգ գիտաց ախորժէն զխաղ և զպար» (Կ. Գանձակեցի, Վենետիկ, էջ 183, Թիֆլիս, էջ 309)։ Հ. Աճառյանը ձեռքի տակ ունենալով միայն այս վկայությունը իր «Արմատական բառարանում» (III, էջ 187) լեկրոս բառին տվել է այսպիսի բացատրություն— «մի տեսակ դիվահար, որ միշտ ուզում է պարել»։

«Խրատական թղթի» քննարկվող կանոնը հնարավորություն է տալիս ճշտելու այս բառի իմաստը. ըստ այդմ «լեկրոս» էին կոչվում այն դուշակները, որոնք երաժշտության տակ հափշտակությամբ պարում էին մինչ ուշաթափության աստիճան և ապա, ինքնամոռացության մեջ սկսում պատգամախոսել։ «Լեկրոս» բառին այսպիսի իմաստ վերագրելուց հետո միայն հասկանալի կդառնա կանոնի վերջավորությունը, որտեղ ասված է՝ «մի ի բանից նոցա խաբեսցին և մի հաւատասցեն բնաւ»։

ԺԲ. կանոնով կաթողիկոսը պատվիրում է. «Ի վերայ մեռելոյ մազ մի կտրեսցեն, և սեաւ մի արասցեն, և զերեսս մի կեղեքեսցեն և զձեռս, և լալական մի վարձեսցեն, և խաւարարգել մի լիցին, զի մի զինքեանս և զմեռեալս վնասցեն և ամաւթով լինին յաստուծոյ» (էջ 214ա)։

Հեթանոսական ժամանակներից պահպանված թաղման ծեսերի ու արարողությունների մասին ուշագրավ վկայություններ են պահպանված հայկական մի շարք աղբյուրներում[1]։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում «խաւարարգել» լինելու սովորույթը, որն արտահայտություն է գտել նաև «Սասնա ծռեր» ժողովրդական էպոսի լավագույն պատումներից մեկում (Շատախեցի Մանուշակ Զադոյանի պատում)։ Մհերի կինը, ամուսնու սպանությունից հետո, ուխտում է «ջուր մաչ եմ օչխին եմ տըղեն չիլնի, հոր հեֆ առնի, ես արեվալուս չկամ» և իրոք «արեվալուս» չի դուրս գալիս, «խավարարգել» է լինում, մինչև իր Դավիթ որդին կոտորում է թշնամիներին ու բերում է իր հոր սպանող Վըհարի գլուխը. այնժամ միայն «առնու մեր նոր հանոր տեսն էլավ լուս» (Սասմա Ծռեր, Ա. հատոր, Երևան, 1936, էջ 707—720)։

«Խրատական թղթի» կանոնների շարքում պատմական ու ազգագրական իր նշանակությամբ հատուկ տեղ է բռնում նախավերջին կանոնը։ Նախ ծանոթանանք նրա բնագրին.

«Ի զրկանաց և ի խաբելոյ պատրաստ կայցեն քրիստոնեայքն և ի նենգելոյ զիրեարս՝ այր և կանայք, հաղկիցք և խաղկիցք, և զինուորակիցք, և արուեստակիցք, գնաւղք և վաճառաւղք, զի որ մարմնական իրաւք զրկէ բռնութեամբ կամ խաբելով՝ զինքն հոգւով զրկէ և յափտենական կենացն» (էջ 214բ)։

Կանոնի իմաստը մեկնության կարոտ չէ։ Կաթողիկոսը զգուշացնում է հոգևոր իր հոտին, որ հանդերձյալ կյանքում կպատժվեն բոլոր անձինք, լինեն նրանք ամուսիններ, զինվորականներ, գնողներ, արվեստակիցներ (համքարներ), վաճառողներ կամ գնողներ, «հաղկիցք ու խաղկիցք», ովքեր փոխադարձաբար կխաբեն ու կնենգեն միմյանց։

---

[1] Հմմտ. Փավստոս, IV, գլուխ ԺԵ, «Կանոնգիրք հայոց», Գր. Լուսաւորչի կանոն ԺԵ, Աթանասի ԼԶ, Սահակի ԼԴ, Շահապիվանի ԺԱ և այլն կանոնները (տե՛ս ձեռագիր № 6409, էջ 48բ, 54բ, 58ա, 70բ, 79բ և այլն)։

Բացատրության կարոտ են միայն կանոնի «հաղկից և խապկից» տերմինները:

Ս. Ամատունու «Հայոց բառ ու բան»-ում կա Լոռու բարբառից վերցված «Հախկ» բառը՝ «ընկերակից գութանավորների ամեն մեկի վարելիք հողը» նշանակությամբ (էջ 383): Ուստի դժվար չէ եզրակացնել, որ Հայաստանի որոշ շրջաններում «հաղկից» էին կոչվում հարակաշները, այսինքն այն գյուղացիները, որոնք չունենալով համապատասխան քանակությամբ քաշող անասուն ու գյուղատնտեսական գործիքներ՝ միավորվում էին, կազմում ընկերակիցների խմբեր, և միասնական ուժերով ու միջոցներով վար ու ցանք անում:

Ոչ պակաս հետաքրքրություն է ներկայացնում «խապկից» տերմինը: Գյուղական այն ընտանիքները, որոնք փոքր քանակությամբ կաթնատու անասուններ ունեին, օրվա ընթացքում իրենց ստացած չնչին կաթով անկարող էին յուղ ու պանիր պատրաստել: Դարերի գործունեության փորձով ժողովուրդը գտել էր այդ դրությունից դուրս գալու եղանակը: Նույն վիճակի մեջ գտնվող գյուղական մի քանի ընտանիքներ փոխադարձ համաձայնությամբ պայմանավորվում էին օրվա ընթացքում ստացած իրենց կաթը, որոշյալ չափ-ամանով, հերթականությամբ, տալ ընտանիքներից մեկին: Ամանը, որով փոխ էին տալիս կաթը, կոչվում էր ղաբ կամ խաբ, խապ (տաճկ. qab—աման բառից), որից և ընկերակցության անդամները՝ «խապկից»: Հայ ժողովրդական տաղերից մեկը նվիրված է հենց նենգող «խապկիցներին»: Ընդամենը տասը այծ ունեցող այրի մի կին, լինելով խապկից «յամէն օր շիրեփ մի ջուր լնոյր ի կաթն և ի խափ (տարբերակ՝ խապ, խաբ) տայր»: Իր այծարած որդու «է՞ր տանես զայդ վնասդ» հարցին մայրը տալիս է այսպիսի պատասխան. «Որդի, մեր կաթնս քիչ է՝ այնոր համար տանեմ, թէ քիչ մի աւելի լինի մեր կաթն, որ մեզ ձմեռնս թացան լինի» (Ն. Մառ, Ժողովածուք առակաց Վարդանայ, մասն Բ., Ս. Պետերբուրգ, 1894, էջ 238—239):

Վերահիշյալով, անշուշտ, չի սպառվում Կոստանդին կաթողիկոսի «Խրատական թղթի» պատմական և աղբյուրագիտական նշանակությունը: Այն գրված էր Արևելյան Հայաստանի բոլոր բնակավայրերում ընթերցվելու համար, ուստի թղթի լեզուն չէր կարող ժողովրդական լայն մասսաներին անհասկանալի գրաբարը լինել: Լեզվաբաններին թողնելով թղթի լեզվի մասնագիտական քննությունը, նշենք միայն, որ միջնադարյան աշխարհաբարի տարրերը գերակշռում են այնտեղ: Կարելի է մեջ բերել բազմաթիվ նախադասություններ ու դարձվածքներ, որոնք ուղղակի գրված են միջնադարյան աշխարհաբարով: Օրինակ. «Արդ, պատճ՞ռ է, որ այսպիսի ազգն և անբիծ և անարատ հաւատն և ամենևին մաքուր ի հերձուածոյ այսպէս ծուլացեալ լինի և ագիտացեալ որ չգիտենա զիւր պատիւն և չունենա սահման խոստովանութեան, և հաղորդութեան և եկեղեցապարգութեան, և քահանայութեան, և աստուծոյ պատարագութիւն, զոր աստուածապահ թագաւորն մեր և կաթողիկոսն և թագաւորութիւն՝ ամենայն եպիսկոպոսաց և մեծամեծաց յանձնում են և այլ մերձակայ քրիստոնէայքս որ մեր եպիսկոպոսքս ի հասանել են՝ ունին աստուծոյ շնորհաւքն և դուք, որ այն ամենայն աստուածազարդ նշանքն եղեն՝ չունիք» (էջ 208բ—209ա) և այլն:

«Խրատական թղթի» բնագիրը հրատարակում ենք Լենինգրադի Սալտիկով-Շչեդրինի անվան հանրային գրադարանի հայերեն ձեռագրերի Նոր շարքի № 37 ձեռագրի համապատասխան էջերի լուսանկարների հիման վրա, օգտագործելով նաև Հ. Ջանփոլադյանի կատարած ընդօրինակությունը:

## [ԽՐԱՏԱԿԱՆ ԹՈՒՂԹ ԿՈՍՏԱՆԴԵԱՅ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ]

208ա Խրատական թուղթ ի ձեռն մեր վարդապետին Վարդանայ, որպէս թէ ես իմ եկեալ և ձեզ առաջի դերեւս ի գետինն եդեալ աղաչեմ արտասուաւք զմի մի իւրաքանչիւր ի ձէնջ և զանձն իմ փոխան տամ, որ զայդ չափաւոր և դիւրագործ աւրէնքդ առնէք յամենայն կարողութենէ ջանացեալ, վասն ձեր հոգւոյ և մարմնոյ աւգտի և շահու և փրկանաց ի պատուհասէ փորձանաց, և մեզ՝ ի պարծանս և յանդատապարտութիւն, որ ընդ ձեր համարս պարտիմք տալ աստուծոյ։ Եւ արդ, ի յեւթնհարիւր թուիս մերոյ տումարիս և լ. (30) հայրապետութեանս մերոյ, յորում ակն ունէաք ողորմութիւն ինչ գտանել յաստուծոյ և բարի համբաւ լսել զձէնջ, մեք զհակառակն հասկացաք, թէ բնաւ չէք լսել աղաչանացս մեր և չէք արարեալ. և բազմապատկեալ են և շատացեալ ամենայն չարիք և մեղաց տեսակք, զոր յառաջ սակաւ ունէիք։ Այլ ծուլացեալ էք ի յուսմանէ և յաղաւթից և ի ժամատեղաց, և էք իբրև զանբան անասունք՝ չգիտելով զաւրէնս քրիստոնէից, զպատիւ հաւատոյս Հայաստանեայց զարեգակնափայլ և զճառագայթաւէտ կրաւնս սուրբ վաստակաւորին Գրիգորի։ Եւ զայս ցեղ մեծ և զպարծելի և զնշանաւոր ազգս Հայոց, զոր Քրիստոս
208բ աստուած || յառաջ քան զխաչելն ողջունեաց և աւրհնութեան թուղթ գրեաց, և Ե. (5) առաքեալ ի սուրբ աշակերտաց իւրոց ի Հայք առաքեաց, և ապա զսուրբ տիկնայսն զսուրբ Հռիփսիմեանքն յԱրեմտից յղարկեաց՝ սուրբ Աստուածածնին միջնորդիւ խաւսեցեալ, և Վիրապին սքանչելաւքն դարձոյց զՀայք առ ինքն։ Եւ ինքն իսկ՝ Թագաւորն փառաց Քրիստոս իջեալ ի բարձանց և ոսկի ուռամբ ջարդէր զգլուխ բանսարկուին և բացեալ զանդունդս արկանէր ի տարտարոսն զայն, ոչ չկամէր թողուլ զՀայք ի ձեռաց։ Եւ հրեղէն աջովն իւրով ի վէմս քանդակեալ տայր գիր Հայոց, մեծարելով քան զազգս ամենայն։ Եւ այսպէս ինքնածաղ է հիմնարկու հաւատոյս Հայաստանեայց և ոչ մարդ ոք։

Արդ, պատե՞հ է, որ այսպիսի ազգն և անբիծ և անարատ հաւատն և ամենեքին մաքուր ի հերձուածոյ այնպէս ծուլացեալ լինի և տգիտացեալ, որ չգիտենա զիւր պատիւն և չունենա սահման խոստովանութեան և հաղորդութեան և եկեղեցազարդութեան և քահանայասիրութեան, և աստուծոյ պաղպայրերութիւն, զոր աստուածապահ թագաւորն մեր և կաթուղիկոսն
209ա և թագաւորութիւն՝ ամենայն եպիսկոպոսաւք և մեծամեծաւք յառ || նում են, և այլ մերձակայ քրիստոնէայքս, ուր մեր եպիսկոպոսերս ի հասանել են՝ ունին աստուծոյ շնորհաւքն և դուք, ուր այն ամենայն աստուածազարդ նշանքն եղեն՝ չունիք։ Եւ այդ ես առաւել հիացումն և մեծ զարմանք, որ այդպէս մոռացայք զպատուհասն զոր կրեցիք՝ հարուածեալք և զանեալք զաւազանաւ ցասմանն աստուծոյ. և տեսանէք աչաւք ձերովք զլերինս և զդաշտս ձեր, որ սակաւ մի յառաջ լի էին զիակոյտ ոսկերաւք սպանելոցն, և զայրս և զխորաձորս, որ լցեալ էին փախստականաւք, և ուտէք և ըմպէք զհաց և զգինի ի գետնոյդ, զոր տեսէք առոգեալ արեամբ սիրելեաց ձերոց։ Դուք, որ ծովացուցէք զաշխարհդ ձեր մեղաւք և տեսէք զդա լցեալ արեամբ և արտասուաւք, և զի լոյս պատուիրանին տեսան և աւրէնք եկեղեցւոյ ոչ ծագէին ի սիրտս ձեր՝ վասն այնորիկ տեսէք զխարումն եկեղեցւոյ և զկոխումն և կողոպուտ սպասուց և պաշ-

անլի և ահաւոր նշանից և աստուածային գրոց։ Եւ ոչ անուցանէիք զողայս ձեր աստուածպաշտութեամբ և ուժամբ տեառն՝ առին զնոսա ի տանց և ի գրկաց ձերոց, այլ և ի ծոցոյ սուրբ եկեղեցւոյ՝ զգնեալս ա-
209 րեամբն Քրիստոսի զզաւակսն, և տա||րեալ վաճառեցին յազգս և յաշխարհս հեռաւորս, իբրև զանբան անասուն։ Եւ շատ են այն էին, որ ոչ գիտէին զշար և զբարի և ոչ զայն եթէ ու՞մ որդիք իցեն և կամ յորմէ՞ ազգէ և աշխարհէ։ Եւ որք գիտենն և յիշեն՝ են ողորմելի, զի կարաւտին ծնաւղաց և ազգայնոց, տանից և բարեկենդանաց և աւրինաց քրիստոնէութեան, եկեղեցւոյ և հաղորդութեան. և ի խորոց սրտէ հառաչեն դառնագոյն հեծեծմանաւք և ոչ հատանեն վասն իմ մեղացն առաւել քան զձեր, որ վարդապետութեամբ այսպիսի աւուրց դիպեցայ և ժամանակի դառնագունի՝ տեսանել և լսել զկսկիծ և զաղէտ իմոց ազգաց և անդամոց։

Եւ ի վերայ այսորիկ, զի զաւրացաւ ողորմութիւնն աստուծոյ մեծին ի վերայ մեր, և էարկ ի բարի կամս մեծազաւր ղանին և իւր խաղաղասէր զաւրագլխացն և զաւրացն, և արարին խաղաղութիւն մնացորդացդ ի ձեռն քրիստոսասէր և աղքատասէր պարոնին Աւագին, որ զիւր կեանքն ձեզ փոխան եդետ։ Եւ դարձեալ կարկատեցայք և արմատ արձակեցիք և շինեցայք։ Եւ մեք լսեցաք և մխիթարեցաք և ուրհնեցաք զաստուած և
210ա զղանին և զիւր || հեծելին բարեմտութիւնն որ առ մեզ։

Եւ վասն զի որպէս արժանն էր չեթող ամենայն ոք զիւր ճանապարհն չար և մեղաց սովորութիւնն, դարձեալ զայրացոյց աստուած զբարս զաւրացդ որ առ ձեզ, և հանին զսուսերս ի պատենից և լարեցին զաղեղունս իւրեանց, և ծայրաքաղ արարին ի բազում տեղիս զմարդ և զանասուն և զստացուածս, որպէս առ մեզ էհաս համբաւն։ Եւ ընդ կապանս և եռանդն մահու անցուցին եկիւղիւ զիշխանս երկրիդ, և մեծաւ հայրենի և գթասիրտ պարոն Աւագն յետ այնորիկ վախճանեցաւ և շիջաւ ճրագն վառ։ Բայց դեռ ոչ արար ողորմածն աստուած ըստ մեղաց մերոց և ոչ հատոյց զամենայն չարիսն մեր, և հաշտեցաւ ընդ մեզ դարձեալ ի տեառնէ յաջողեալ զաւրքն ղանին, և կայք ի տունս ի և վանորայս և ի հայրենիս ձեր, և եկեղեցիք են ի ձեզ տեղիք աղաւթից և պատարագաց ի յիշատակս մեռելոց և ի սնունդ և ի փրկութիւն կենդանեաց։ Ի վերայ այդորիկ ուրհնութիւն և գոհութիւն, պատիւ և փառք անճառ սիրոյն և գթութեանցն Քրիստոսի աստուծոյ մերոյ յաւիտեանս յաւիտենից։

Եւ թէ հարկդ ծանր է և խիստ՝ և այլ վասն մեղաց է, զի կարկուտ և
210բ երաշտով և խորշակով և մարախով պակասութիւն ||է ի լինել երկրիդ պտղաբերացդ, ուստի զհարկն ձեր վճարէք։ Արդ, դուք մեզ լսեցէք և ի բարին դարձէք և ի ձեր պարկեշտ վարքն ըստ պատուիրանին աստուծոյ՝ և մեք երաշխաւոր եմք, որ ամենայն ճշմարտութեամբ աստուած առ ձեզ դառնայ գթութեամբ և ողորմութեամբ յաւդոց և յեղանակաց տարւոյ, բարեխառնութեամբ երկինք երկնաւորաւքն տացէ զքաղցրութիւն իւր ի վերա ձեր, և երկիր առատութեամբ տացէ ձեզ զպտուղ իւր, և ղանին կամքն արձակմանայ և թեթևացուսցէ զմալն, զի սիրտ թագաւորաց ի ձեռին աստուծոյ են և նա է տուեալ զամենայն աշխարհս ղանին և այլ է տալոց նմա, չպակասէ ոչինչ զձեր մալն թեթևացնելով[1]։ Ապա դուք զառաջի

[1] Բնագրում՝ «չթեթևացնելով»։

աղաւթք նմա և իւր զաւրացն արարէք, զի այն է մեր աւրէնքն, որ զոր աստուած մեզ տէր և թագաւոր տացէ՝ յառաջին աղաւթքն մեր զնմա կենդանութիւնն և զաջողումն խնդրեմք, և այսաւր զնա է տուեալ և թող հանապազ զնա տա։ Զի ուստի՞ այնպիսի չարատեաց և մեղատեաց իշ-

Նկ. 1. «Խրատական թղթի» բնագրի առաջին էջի լուսանկարը:

խանութիւն և բարեսէր և լաւասէր, զի մեր աւրէնքն այլ այն է, որ յիշող բնաւ չգիտեն, և զգողութիւն և պոռնկութիւն մարդոյ և զբոզութիւն
211ա ||արամբի կնոջ առեն, և զնենգութիւն և զատախաւսութիւն և զկեղծաւորութիւն և զամենայն չարաբարութիւն մարդոյ:

Եւ արդ, ես հազևոր հայրս ձեր և հայրապետս, որպէս թէ ի ծունկս իջեալ առաջի ձեր՝ մեծի և փոքու, մաղթեմ արտասուաւք, բարեխաւս անելով առ ձեզ զարիւն և զքրտունս և զվարս և զվաստակ առաջին հայրապետացն սրբոց և քաջ նահատակացն, և զիմ ծերացեալ հասակ և

գալիս առաջի ձեր ընկենում և այնպէս աղաչեմ՝ մի առնէք զմեզ ամաւթով
և զատապարտ առաջի ատենին աստուծոյ, որ պահանջելոց է յինէն և
յայլ առաջնորդացն ձերոց՝ զհամարս կենաց և վարուց՝ ձերոց, և մի
մատնէք զանձինս ձեր աստէն կենաւք ի մեծամեծ փորձութիւն և յետ
աստի կենացս անշիջանելի գեհեննին և աններելի տանջանացն, այլ
զգաստացարուք և ի յուշ և ի խելս եկէք և ի գիտութիւն ճշմարտութեան,
և ի բաց հանէք զամենայն բիծ և զարատ յանձանց ձերոց և զահաւակ
մեղաց, որ արտաքս պատուիրանին մտեալ է ի ձեզ:

Եւ յառաջ զոր յղարկեցի առ ձեզ կարճ բանիւ զմեր սուրբ հարցն
211բ զխրատ և զուսումն, թէ որպէս պարտ է լինել քրիստոն||եին, զոր մինչ ի
մեզ պահեալ է մեր ազգս, և ի մեր ժամանակս լսեմք թէ ի մոռացմունս
եղեալ յայլքատութենէ և յանպարապութենէ և առաւել ի մեր ծուլութենէ,
որ չենք զգուշացուցել և չենք ասացել և ամաւթով ենք յաստուծոյ և ի
ձեզանէ: Արդ, դարձեալ յուշ առնենք ձեզ, զոր վերատին գրեցաքն, որ ով
գիտէ՝ հաստատի և ով չգիտէ՝ ուսանի, զի յառաջ գիտելն է և ապա
առնելն:

(Ա.) Եւ առաջին այս եղիցի ուսումն, որ ամուսնաւորքն հինգ ազգաւք հեռի լինին յարեան ազգակցութենէ, և ի վեցերորդին պսակին: Քան ԺԳ. (13) տարին պակաս չլինի հարսն և փեսայն՝ քան ԺԴ. (14), և յեկեղեցին զպսակն և նաւթի և հաղորդին արժանիքն, և Ը. (8) աւր սուրբ կենան մինչ ի վերանալ պսակին: Եւ աղուհացիցն և յինունքն և յամենայն արտապահք և շաբաթապահք և յամենայն կիրակէի և ի խաչին և յայտնութեան ութաւրէքն ոչ աւրհնեն պսակ, զի ոչ է հրամանք հեշտանալ անկողնաւք: Եւ երբ յղի է կինն՝ ի բաց կան, որպէս և անառնից անգամ աւրէն է, և ի ժամ արձակման արեանն՝ նոյնպէս:

Բ. Երբ ծնանի մանուկն չառնեն, ինչ հմայութիւն և կապեն յորորցն
212ա կամ || ի բաղուկ տղային, այլ խաչիւն կնքեն յանուցն և ի գնելն և ի գիտ-
ցուցանելն կաթն կամ ջամբ: Եւ երբ զձեռն շարժել կարէ տղայն ուսցնեն,
որ ինքն կնքէ զխաչն, նախ ի գլուխն, ապա յոտն, որ լինի բուն խաչին,
ապա ի ձախ թեւն, ապա յաջն բերէ, որ լինի խառորնակ թեւն, և երբ լե-
զուն արձակի[1] յառաջ զաստուծոյ անունն տան խաւսել՝ աստուած, տէր
Յիսուս Քրիստոս, հայր և որդի և սուրբ հոգի, աւրհնեալ է աստուած,
աւրհնեալ Քրիստոս աստուած, աւրհնեալ հայր և որդի և սուրբ հոգի,
փառք հաւր և որդւոյ և սուրբ հոգւոյն, աւրհնեալ սուրբ երրորդութիւն այժմ
և միշտ, ապա զսուրբ աստուածն, ապա զհայր մեր որ յերկինս: Զայս
բաներս արդ ուսուցանեն քահա[նա]յքն տղայոց, մինչ ի ծերս և ի պա-
ռաւունս: Եւ յաւրն Գ. (3) անգամ ասեն՝ ի ժամ քնոյն և առաւաւտոյն և
ի հացին ժամն, ԺԲ. (12) ծնրով, մեծաւ փութով[2]:

Գ. Մին շաբաթ կնքեն զտղայն, երէցն նաւթի և երկեղիւ և անզրոյց, բայց թէ մահու երկեղ լինի՝ յամէն ժամ կնքեն: Այլազգոյ և կնոջ չտան սան զտղայս քրիստոնէից:

---

[1] Գրված է եղել «հաստատի», սակայն լուսանցքի վրա, հատուկ նշանով, ցույց է տրված, որ պետք է կարդալ «արձակի»:

[2] Գ. կանոնը կամ վրիպել է ընդօրինակողի ուշադրությունից և չի արտագրվել կամ էլ Բ. կանոնից հետո սխալմամբ նշանակելով Դ. (մեջանցելով Գ-ն), ընդօրինակողը խախտել է կանոնների նախնական համարակալությունը:

Ե. Յամենայն կիրակէի առնու քահանայն զխոստովանութիւնն ի ժողովրդենէն՝ ի Դ. (4) ամէն ի վեր՝ յառնէ և ի կնոջէ: Եւ թէ շատ է ժողովուրդն
212բ ի ԻԱ. (21) ||աւրն անպատճառ ճանաչէ զիւր ժողովուրդն երէցն, թէ որպէս է կացեալ. և ի մտի պահեն զյանցանքն՝ մինչ որ աւուրն իրիցուն: Եւ թէ մեծ ինչ մեղք է՝ յաւրն յորում դիպեցաւ խոստովանի, և մի հանգիստ անձինն մինչ որ խոստովանի, և խռովութիւն ի վաղիւն մի եղցէ քրիստոնէին: Եւ խոստովանութեան խրատ վայելչական զեկուցանեմք: Գ. (3) ծունր դնէ ընդ արևելս և ասէ՝ Հաւատամ ի քեզ Հայր և որդի և սուրբ հոգի, երրորդութիւն և մի աստուածութիւն, անոխակալ և անյիշաչար, որ քննես զսիրտս մեր և քննես զամենայն գործս մեր, հաւատամ ի քեզ Քրիստոս աստուած, որ եկիր և գալոց ես դատել զաշխարհս ըստ իւրաքանչիւր գործոց: Եւ ի ծունկս իջանէ առաջի քահանային մարդն գլխիբաց և կինն ծածկով և ասէ՝ մեղայ աստուծոյ, մեղայ սուրբ պատուիրանի նորա, մեղայ առաջի աստուծոյ և հրեշտակին, որ պահէ զիս, մեղայ իմոյ անձինս և ամենայն մերձաւորաց իմոց, մեղայ խորհրդով, բանիւ և գործով, աչաւք, ականջաւք, լեզուաւք, ձեռաւք, ոտաւք և ամենայն անդամաւքս, առաւել կամաւք և գիտութեամբ, քան թէ ակամա և անգիտու-
213ա թեամբ, մեղայ և քեզ ||տէր երէց և իմ հոգևոր հայր, մեղայ քո սուրբ խրատուն և աւրինացն, զոր պատուիրեցեր ինձ: Եւ ապա սկսանի որպէս և լեալ է և զաւրինակ մեղացն, պարսաւելով զինքն և արտասուաւք, և այնպէս ջանայ, որ աւելի ասէ քան զայն, որ լեալ են իրքն:

Զ. Յամէն Խ. (40) աւր հաղորդեսցին արժանաւորքն ահիւ և դողութեամբ և մեծաւ յուսով և լի հաւատով, որպէս ի ճշմարիտ մարմին և յարիւն աստուծոյ մերձեցեալք: Գ. (3) աւր սուրբ կացցեն յանկողնոյ աւրինաւոր՝ յառաջ քան զհաղորդիլն և յետոյ: Զգուշանան և սուրբ պահեն զբերանն ի յիշոցաց, և յամենայն չար խաւսից, ի մատնութենէ, ի զուր ասելոյ և ստէ, ի բամբասանաց, յանպատշաճ խաւսից, ի խաբելոյ, յաւելի ուտելոյ, ի խմելոյ և յանսուրբ կերակրոյ. որպէս զաստուծոյ դուռն մտից պահել զբերանն:

Է. Յիշոցաւոր դնել յամենայն տեղիս՝ ի մեծ և ի փոքր, անողորմ տուգանով և խրատով, և առաւել որ հաւատ, կամ բերան, կամ երես անարգէ, կամ քահանայ, կամ զերեզման՝ զլեզուն ծակեն և լար անցուցանեն և ի շուրջ ածեն ծեծելով, և տուգանք առնուն և ընդ աղքատացն ի մայն տան:

213բ Ը. Ամէն պահք անձա||կն և անգինի և անամուսնութիւն լիցի, և ամենայն զգայութեանցն պահպանութիւն յամենայն մեղաց և ոչ միայն յուտելոյ և յըմպելոյ, զի պահք է անունն:

Թ. Գարի և ալիւր և աղ և ալուն և ջուր մի գիւթեսցեն, և խարութիւն հաւաց[1] թաշման և կոշման, և մարմնոյ խաղալոյ, և երազոց, և ձայնի կրակոյ և դրան, և սողնոյ ինչ երևելոյ ի տանն, զի այսպիսիքս աւտար են ի կրաւնից քրիստոնէից, և մի որ իշխեսցէ առնել, զի մեծ մեղք են:

Ժ. Ի քաջախաւս և յերազահան մի որ երթիցէ և լեկրատի մա[ւ]ան աղի մի իշխեսցեն ածել, և մի ի բանից նոցա խաբեսցին և մի հաւատասցեն բնաւ:

1 Բնագրում, անշուշտ վրիպակով, գրված է՝ «հաւատոց»:

ԺԱ. Կնքոյն և խոստովանութեանն և հաղորդին դրամ մի տացեն և
ոչ երիցունքն առցեն, այլ ձրի լիցի ամենևին, զի պարգև աստուծոյ է և
ոչ մարդոյ։ Որպէս և մեք անարծաթ ձեռն դնեմք ի վերայ եպիսկոպոսացն
և եպիսկոպոսքն ի վերայ քահանայից՝ նոյնպէս և քահանայքն իւրեանց
արասցեն անպատճառ։ Ապա պսակին և թաղմանն և մատաղին զինչ
ուրէնքն է տացեն ժողովուրդքն երիցուն, և խաչահամբոյր, և յամենայն
արդեանց պտուղ՝ բաժին աստուծոյ, որ այլ ամենայն ստացուածքն
214ա ուրհնութեամբ լցցին և աստուած բաժնակից լիցի ||քրիստոնէից և պահէ
զպտուղս տարւոյն յամենայն վնասուէ։

ԺԲ. Ի վերայ մեռելոյ մազ մի կտրեսցեն, և սեաւ մի արասցեն, և
զերեսս մի կեղեքեսցեն և զձեռս, և լալական մի վարձեսցեն, և խաւա-
րաճել մի լիցին, զի մի զինքեանս և զմեռեալս վնասցեն և ամաւթով
լինին յաստուծոյ անյուսաբար կոծ դնելով, զի հեթանոսաց [է] և ոչ քրիս-
տոնէից այդպիսի ուրէնք։

ԺԳ. Կախարդ և գող և պոռնիկ և բոզ և յիշոցատաց կամ դառնան ի
չարէն, կամ հալածին անողորմ, զի մի յանմեղացն վերայ ածցեն զբար-
կութիւնն աստուծոյ։

ԺԴ. Շաբաթ կիւրակէքն ամէն մեծ և փոքր ի ժամատեղն երթան և
աղուհացքն՝ յամէն ուր. և զրոյց մի տացեն ի ժամատեղն, այլ լռութեամբ
և երկեւղիւ յաղաւթս կացցեն, որպէս յառաջի աստուծոյ համարելով զին-
քեանս։

ԺԵ. Գ. (3) անգամ ժողովէ ի տարին երէցն յեկեղեցին որիշ որիշ՝
զարս և զկանայս և զկուսան աղջկունս և զկուսան կորձերն և յարմար
հասակացն և վարուցն խրատ տացէ, զի ամէն հասակի և վարուց և բա-
րուց խրատ որիշ է։

ԺԶ. Կարողք և ունևորք զիւրեանց թիկունք մի արասցեն և աղքատ
նացին[1] և զոյժ հարկին ի ակարան և յաղքատան թողցեն, զի մի աղքա-
214բ մեցուսցեն զարարիչն նոցա, և ||նոցա պսակ զուգեսցեն ի հանդերձեալն
և զիւրեանցն զրկեսցեն, զի մեղք նոցա սրբի, որ յայս ժամանակս իբր մի
ոյժ հասանէ[2], զի վասն մեղաց է պատուհասն։

ԺԷ. Ի զրկանաց և ի խաբելոյ պատրաստ կայցեն քրիստոնեայքն և
ի ննջելոյ զիրեարս՝ արք և կանայք, հաղկիցք և խապկիցք, և զինուո-
րակիցք, և արուեստակիցք, գնաւղք և վաճառաւղք, զի որ մարմնական
իրաւք զրկէ բռնութեամբ կամ խաբելով՝ զինքն հոգւով զրկէ և յաւիտենա-
կան կենացն։

ԺԸ. Արժանաւորացն և ունելոցն և լաւ քահանայիցն լիցին եկեղե-
ցիք և ժողովուրդք[3]։

---

[1] Աղճատված բառ է, թերևս պետք է կարդալ՝ «նոցին» կամ «նատին»։

[2] Կարելի է կարդալ նաև «հասանի»։

[3] Այսքանով ավարտվում է։ Շարունակությունը չի ընդօրինակված ձեռագրում։